Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 3 ՓԵՏՐՎԱՐ 1953

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78*



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ 35-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*1953 թվականի փետրվարի 23-ին լրանում է հերոսական Սովետական Բանակի և Ռազմա-ծովային նավատորմի 35 տարին։ Ստեղծված լինելով Սովետական պետության հիմնադիրներ Լենինի և Ստալինի կողմից, Սովետական Զինված ուժերը արդեն երեք և կես տասնամյակ է, ինչ արթուն կերպով կանգնած են մեր հիասքանչ Հայրենիքի պետական շահերի պաշտպանության դիրքերում, աննկուն կերպով պաշտպանելով սովետական ժողովրդի համաշխարհային պատմական հաղթանակները և նրա խաղաղ ստեղծագործական աշխատանքը։*

*Սովետական Զինված Ուժերի գոյության 35-րդ տարեդարձը սովետական մարդիկ նշում են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի*

*որոշումների կենսագործման համար ծավալած հերոսական պայքարի պայմաններում, Սովետական պետության հզորության հետագա ամրապնդման և խաղաղության պաշտպանության, ժողովուրդների բարեկամության ու համագործակցության համար հետզհետե ավելի ու ավելի լայն ծավալվող պայքարի պայմաններում։*

*Սովետական ժողովուրդը հպարտությամբ է նայում իր Զինված Ուժերի անցած մարտական ուղուն։*

*1947 թվականի փետրվարի 23-ի իր հրամանում, որը նվիրված է Սովետական Բանակի 29-րդ տարեդարձին, ընկեր Ստալինը գրել է.*

*«Մեծ Լենինի կողմից հիմնված Սովետական Բանակը անցել է փառապանծ ուղի։ Նրա ամբողջ պատմությունը հանդիսանում է հերոսության, Հայրենիքին անձնվիրաբար ծառայելու և իր զինվորական պարտքը արիաբար կատարելու կենդանի օրինակ։ Դա առանձնապես վառ կերպով արտահայտվեց Հայրենական Մեծ պատերազմում Սովետական Բանակի տարած նշանավոր հաղթանակներում։ Հայրենիքը երբեք չի մոռանա իր Բանակի հերոսական գործերը»։*

*Սովետական Բանակի մեծագույն հաղթա-*



*նակները ձեռք են բերվել Սովետական հասարակական ու պետական կարգի անսասանության շնորհիվ, հարազատ կոմունիստական պարտիայի ոգեշնչող և ուղղություն տվող գործունեության և մեր մեծ ու իմաստուն առաջնորդ, հարազատ հայր ընկեր Ստալինի հանճարեղ ղեկավարության շնորհիվ։*

***

*Սովետական Բանակը ծնվել և հզորացել է միջազգային իմպերիալիզմի ռազմական ինտերվենցիայի և ներքին կոնտրռևոլյուցիոն ուժերի դեմ մղված պայքարի ծանր ու ահեղ օրերին։ Երիտասարդ սովետական ռեսպուբլիկայի գոյության արշալույսին բոլոր երկրների իմպերիալիստները, ամերիկաանգլիական ագրեսորների գլխավորությամբ, «խաչակրաց արշավանք» ձեռնարկեցին մեր Սովետական Հայրենիքի դեմ, ձգտելով արյան մեջ խեղդել աշխարհի առաջին սոցիալիստական պետությունը։*

*Սովետական պետության առաջ ամբողջ հասակով ծառացավ իմպերիալիստական գիշատիչներից երկիրը պաշտպանելու համար հզոր, քաղաքականապես գիտակից ու կարգապահ բանակ ստեղծելու դժվարագույն*

խնդիրը։ Լենինը և Ստալինը անասելի ծանր պայմաններում ստեղծեցին կանոնավոր, նոր տիպի բանակ՝ ազատագրված բանվորների ու գյուղացիների բանակ։ 1918 թվականի հունվարի 28-ին Վ. Ի. Լենինը դեկրետ ստորագրեց Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակ, իսկ փետրվարի 14-ին՝ Բանվորա-Գյուղացիական Կարմիր Նավատորմ ստեղծելու մասին։

Սովետական Բանակը իր գոյության առաջին իսկ օրից ցույց է տալիս արիության և հերոսության, Հայրենիքին անձնվեր ծառայելու, իր զինվորական երդումը քաջությամբ կենսագործելու օրինակ։

1918 թվականի փետրվարի 23-ին Սովետական Բանակը Պսկովի և Նարվայի մոտ վճռական հակահարված տվեց գերմանական ինտերվենտներին։ Գերմանական իմպերիալիզմի հրոսակախմբերին ջախջախելու օրը՝ 1918 թվականի փետրվարի 23-ը դարձավ Սովետական Բանակի ծննդյան օրը։

Գերմանական զավթիչների պարտությունից հետո Սովետական ռեսպուբլիկայի ազատության ու անկախության վրա իրենց արյունոտ ձեռքը բարձրացրին ամերիկյան, անգլիական, ֆրանսիական, յապոնական և այլ երկրների իմպերիալիստները, որոնք



լցված թունավոր ատելությամբ դեպի մեր Սովետական Հայրենիքը, սկսեցին ռազմական ինտերվենցիա, նպատակ ունենալով վերականգնել կապիտալիստների և կալվածատերերի իշխանությունը, ստրկացնել մեր երկիրը և վերածել այն ամերիկա-անգլիական իմպերիալիզմի գաղութի։ Կոմունիստական պարտիայի և նրա առաջնորդներ Լենինի և Ստալինի գլխավորությամբ, Սովետական Բանակը ջախջախեց օտարերկրյա ինտերվենտներին և սպիտակ գվարդիականներին։

Ամերիկա-անգլիական թալանչիական զորքերի ջախջախումը 1918—1920 թվականներին՝ Սովետական ժողովրդի և նրա երիտասարդ Բանակի մեծագույն հաղթանակն էր։

Քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի տարիներին Սովետական Բանակի պատմական հաղթանակների անմիջական կազմակերպիչը և ոգեշնչողը ընկեր Ստալինն էր։ Կոմունիստական պարտիան և մեծ Լենինը ընկեր Ստալինին ուղարկում էին ամենապատասխանատու ռազմաճակատները, որտեղ վճռվում էր ռևոլյուցիայի բախտը։ Ցարիցինի և Պերմի տակ, Պետրոգրադի տակ և Դենիկինի դեմ, արևմուտքում՝ պանական Լեհաստանի

և Հարավում՝ Վրանգելի դեմ — ամենուրեք ընկեր Ստալինի երկաթե կամքը և զորավարական հանճարը ապահովում էին Սովետական Բանակի հաղթանակը։ Քաղաքացիական պատերազմի ժամանակաշրջանում ընկեր Ստալինը դրեց նոր, սովետական առաջավոր ռազմական գիտության հիմքը։ Օտարերկրյա ինտերվենտների և ներքին կոնտրռևոլյուցիայի դեմ մղած կատաղի մարտերում Սովետական Բանակը գլխովին ջախջախեց նրանց զինված բանդաներին։ Բայց ինտերվենտների ջախջախումը քաղաքացիական պատերազմի տարիներին չվերացրեց մեր սոցիալիստական Հայրենիքի դեմ իմպերիալիստների կողմից սպառնացող ռազմական նոր ավանտյուրաների վտանգը։

Ընկեր Ստալինը պարտիային և սովետական ժողովրդին անդուլ կերպով սովորեցնում է մշտապես հիշել ռազմական հարձակման սպառնալիքը և գտնվել մոբիլիզացիոն պատրաստության վիճակում, լինել զգոն, անդադար ամրապնդել Սովետական պետության պաշտպանական հզորությունը, բարձրացնել նրա զինված ուժերի մարտունակությունը, որպեսզի ագրեսորների ոչ մի ոտնձգություն չկարողանա հանկարծակիի բերել մեզ։



«Մեր ժողովրդի առջև, պատմության առջև ընկեր Ստալինի մեծագույն ծառայությունն այն է, որ նա գտավ և ցույց տվեց Սովետական Միության հզորությունն ամրապնդելու ճիշտ ուղիներն ու միջոցները։ Այդ կարևորագույն խնդրի կատարման վճռական պայման և գլխավոր նախադրյալ հանդիսացավ երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման ստալինյան քաղաքականությունը» (Ն. Բուլգանին)։

Ընկեր Ստալինի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը պատմական ամենակարճ ժամանակամիջոցում արմատապես վերափոխեց երկիրը, դարձնելով այն առաջավոր ինդուստրիալ տերություն, հզոր՝ ռազմական տեսակետից, ընդունակ՝ մասսայական մասշտաբով արտադրելու ժամանակակից ռազմական տեխնիկա։

Այժմ բոլորի համար հասկանալի է, որ եթե Հայրենական Մեծ պատերազմի տարիներին մեր երկիրն ուներ հզոր և կանոնավոր ռազմական տնտեսություն, որը լրիվին ապահովեց մեր վիթխարի պահանջները սպառազինության, ռազմամթերքի, հանդերձանքի ու պարենամթերքի ասպարեզում, ապա այդ հնարավոր դարձավ միմիայն ստալինյան իմաստուն քաղաքականության շնորհիվ, մեր

Հայրենիքի ռազմական ուժի նկատմամբ ընկեր Ստալինի ցուցաբերած անդուլ հոգատարության շնորհիվ։

Ընկեր Ստալինի ղեկավարության շնորհիվ սովետական Զինված Ուժերը աճելով, դարձան մի այնպիսի ահեղ ուժ, որը սարսափ է ազդում մեր Հայրենիքի բոլոր թշնամիներին։

Անդուլ կերպով աշխատելով սովետական պետության ռազմական հզորությունն ամրապնդելու վրա, ընկեր Ստալինը միևնույն ժամանակ մեր երկրի արտաքին քաղաքականությունը հետևողականորեն առաջ է տանում ժողովուրդների խաղաղության և անվտանգության համար պայքարելու ուղիով։ Նա բազմիցս նախազգուշացնում էր աշխարհի ժողովուրդներին, որ ֆաշիստական Գերմանիան և իմպերիալիստական Ճապոնիան զավթողական պատերազմ են նախապատրաստում։ Ընկեր Ստալինը կոչ էր անում ազատասեր ժողովուրդներին՝ համախմբվել պատերազմի հրձիգների դեմ պայքարելու, ֆաշիստական ագրեսորներին սանձահարելու համար։

Սակայն իմպերիալիստական կառավարությունները, նախ և առաջ ԱՄՆ-ը, Անգլիան և Ֆրանսիան, ոչ միայն միջոցներ ձեռք չէին առնում պատերազմը կանխելու համար, այլև



ամեն կերպ խրախուսում էին գերմանական ֆաշիստներին և նրանց պատերազմի էին դրդում ՍՍՌՄ-ի դեմ։ Միլիոնավոր մարդկանց ոչնչացման ու տառապանքների գնով, քաղաքների և գյուղերի ամայացուցիչ ավերումների գնով էին վճարում Եվրոպայի ժողովուրդները երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ՝ իմպերիալիստական կառավարությունների այդ դավաճանական քաղաքականության համար։

Այդ տարիներին Սովետական պետությունը ամրապնդում էր մեր երկրի պաշտպանությունը և պաշտպանում մեր Հայրենիքի սահմանները։ 1938 թվականին Սովետական Բանակը ջախջախեց մեր սահմանները խախտող Ճապոնական զավթիչներին Խասան լճի մոտ, իսկ 1939 թվականին՝ Խալխին-գոլի շրջանում։ 1939—1940 թվականներին Սովետական Բանակը քաջությամբ կատարեց իր պարտքը Հայրենիքի առաջ սպիտակֆինների դեմ մղած պատերազմում և ապահովեց մեր երկրի հյուսիս-արևմտյան սահմանների և Լենինգրադ քաղաքի անվտանգությունը։

***

Սովետական Բանակի համար մեծագույն փորձություն հանդիսացավ սովետական ժո-

ղովրդի Հայրենական Մեծ պատերազմը հիտլերյան զավթիչների դեմ։

Հայրենական Մեծ պատերազմը մեր Հայրենիքի երբևէ ապրած պատերազմներից ամենածանր ու ամենադժվար պատերազմն էր։ Ամերիկյան իմպերիալիստների օգնությամբ կյանքի կոչված հիտլերյան հորդաները 1941 թվականի հունիսի 22-ին ուխտադրուժ կերպով հարձակվեցին Սովետական Միության վրա։ Ֆաշիստական Գերմանիայի հարձակումը մահացու սպառնալիք ստեղծեց մեր Հայրենիքի համար։ Հիտլերականները բացեիբաց իրենց նպատակ էին դրել ոչնչացնել Սովետական պետությունը, բնաջնջել միլիոնավոր սովետական մարդկանց, ստրկացնել մեր ժողովուրդներին։

Օգտվելով հանկարծակի հարձակման առավելությունից, ֆաշիստական բարբարոսները ներխուժեցին մեր երկիրը և առաջ խցկվեցին դեպի ՍՍՌՄ կենտրոնական շրջանները։ Ֆաշիստական ավազակները ավերում էին քաղաքները, հրկիզում գյուղերն ու ավանները, բնաջնջում սովետական մարդկանց։

Ուրիշ ոչ մի պետություն չէր դիմանա հիտլերյան Գերմանիայի սարսափելի գրոհին, և կոչնչանար։ Բայց մեր երկիրը դիմացավ



թշնամու կատաղի գրոհին։ Կոմունիստական պարտիայի և Մեծ Ստալինի կոչով ՍՍՌՄ ժողովուրդները ոտքի ելան կրծքով պաշտպանելու սոցիալիստական Հայրենիքը։

Մեր Հայրենիքի համար այդ ծանր և ահեղ օրերին ամբողջ ուժով դրսևորվեց մեր առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի զորավարական հանճարը։ Նա իր վրա վերցրեց ողջ պատասխանատվությունը երկրի և ժողովրդի բախտի համար, որպես Գերագույն Գլխավոր Հրամանատար գլխավորելով պայքարը թշնամու արշավանքի դեմ։

Հայրենական Մեծ պատերազմի առաջին իսկ օրերին ընկեր Ստալինի կոչով սովետական մարդիկ միահամուռ կերպով ոտքի ելան պաշտպանելու սոցիալիստական Հայրենիքը, ջախջախելու թշնամուն և հասնելու լիակատար հաղթանակի։ 1941 թվականի հուլիսի 3-ին, ժողովրդին ուղղած իր դիմումի մեջ, ընկեր Ստալինը բացահայտեց մեր պատերազմի արդարացի բնույթը, մերկացրեց հիտլերյան բանակի անպարտելիության առասպելը, կանխագուշակեց նրա անխուսափելի պարտությունը, տվեց գերմանա-ֆաշիստական զավթիչներին ջախջախելու պարզորոշ ծրագիրը, որոշեց ժողովրդի և բանակի խնդիրները պատերազմի մեջ։

Հենց պատերազմի սկզբից Սովետական Միության ժողովուրդները խորապես գիտակցում էին պատերազմի նպատակը։ «Ֆաշիստական կեղեքիչների դեմ մղվող այս համաժողովրդական Հայրենական պատերազմի նպատակն է,— ասել է ընկեր Ստալինը 1941 թվականի հուլիսի 3-ին,— ոչ միայն վերացնել մեր երկրի վրա կախված վտանգը, այլև օգնել Եվրոպայի բոլոր ժողովուրդներին, որոնք հեծում են գերմանական ֆաշիզմի լծի տակ»։ Բացի Սովետական Միությունից, աշխարհում չկար ուրիշ մի ուժ, որ ընդունակ լիներ ջախջախելու գերմանա-ֆաշիստական զավթիչներին։

Ֆաշիստական պետություններին ջախջախելու գլխավոր և վճռական դերը պատկանում է Սովետական Միությանը։

Սովետական Բանակը երեք տարի մենակ մարտնչում էր Գերմանիայի և նրա դաշնակիցների բոլոր զինված ուժերի դեմ։

1942 թվականի սեպտեմբերին գերմանացիները սովետա-գերմանական ռազմաճակատում ունեին 240 դիվիզիա։ Այդ նույն ժամանակ Հյուսիսային Աֆրիկայում անգլիացիների դեմ կանգնած էին ընդամենը գերմանական 4 դիվիզիա և իտալական՝ 17 դիվիզիա։ Նույնիսկ այն ժամանակ, երբ անգլո-



ամերիկյան զորամասերը Ֆրանսիայում ցամաք դուրս եկան, նրանք իրենց դեմ ունեին միայն գերմանական 75 դիվիզիա, Հիտլերն առաջվա նման արևելյան ռազմաճակատում էր պահում իր զորքերի հիմնական և այն էլ լավագույն մասը։ ՍՍՌՄ Զինված Ուժերին բաժին էր ընկել ծանր և պատասխանատու խնդիր՝ ջարդել հիտլերյան բանակի ողնաշարը։

1941 թվականի դեկտեմբերին մեր զորքերը գերմանացիներին ջախջախեցին Մոսկվայի տակ և ընդմիշտ թաղեցին գերմանական բանակի «անպարտելիության» մասին հիտլերյան պրոպագանդայի հնարած առասպելը։ Մեր հաղթանակը Ստալինգրադի տակ նշանակում էր արմատական բեկում պատերազմական գործողությունների ընթացքում։ Սովետական Բանակն իր ձեռքը վերցրեց նախաձեռնությունը և այն բաց չթողեց մինչև պատերազմի վերջը։

Սովետա-գերմանական ռազմաճակատում տեղի էին ունենում ամենակատաղի մարտեր։ Պատերազմների պատմությունը չգիտե այնպիսի ճակատամարտեր, ինչպես Մոսկվայի, Լենինգրադի, Ստալինգրադի, Կուրսկի

մոտ, Դնեպրի ափին, Բելոռուսիայում և Բեսարաբիայում, Դանուբի և Օդերի ափին, Արևելյան Պրուսիայում և Բեռլինի մոտ տեղի ունեցած նշանավոր ճակատամարտերը։

Սովետական Բանակը փայլուն հաղթանակ տարավ։ Նա գերմանական զորքերին հասցրեց այնպիսի խորտակիչ հարվածներ, որոնք լիակատար կրախի հասցրին ֆաշիստական Գերմանիային։

Սովետական Բանակն իր վճռական ավանդը մտցրեց նաև իմպերիալիստական Յապոնիայի ջախջախման գործում։ Նրան պետք եղավ ընդամենը միայն երկու շաբաթ, որպեսզի ջախջախեր յապոնական իմպերիալիզմի զինված ամենաընտիր ուժերը։ Հեռավոր Արևելքում ձեռք բերած այդ հաղթանակով Սովետական Միությունն արագացրեց երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտումը։

Եվրոպայի և Ասիայի մարտադաշտերում ՍՍՌՄ Զինված Ուժերը ջախջախեցին ժամանակակից ամենաուժեղ իմպերիալիստական բանակները և ամբողջ աշխարհին ցույց տվին իրենց զենքի ահեղ հզորությունը։

Թշնամիների դեմ մղած մարտերում կոփվելով, Սովետական Բանակը վերածվեց մասսայական հերոսական բանակի։ Ավելի



քան 7 միլիոն սովետական զինվորներ, նավաստիներ, սպաներ ու գեներալներ Հայրենական Մեծ պատերազմի շրջանում պարգևատրվեցին ՍՍՌ Միության շքանշաններով ու մեդալներով։ Տասնմեկ հազար սովետական ռազմիկներ արժանացել են Սովետական Միության Հերոսի կոչման։

Սովետական Բանակի շարքերում, Սովետական Միության ժողովուրդների հետ միասին Հայրենական պատերազմի ռազմաճակատում արիաբար մարտնչում էին նաև հայ ժողովրդի քաջարի զավակները։ Ավելի քան 50 հազար հայ զինվորներ, սպաներ ու գեներալներ պարգևատրվեցին ՍՍՌ Միության շքանշաններով և մեդալներով, 110 հայ ռազմիկներ արժանացան Սովետական Միության Հերոսի բարձր կոչման։

Պատերազմը ցույց տվեց, ասում է ընկեր Ստալինը, որ Սովետական Բանակը մեր ժամանակի առաջնակարգ բանակն է, որն ունի միանգամայն ժամանակակից լիակատար սպառազինություն, ամենափորձված հրամանատարական կազմ և բարոյական-մարտական բարձր հատկություններ։

ՍՍՌՄ Զինված Ուժերի մատուցած մեծագույն ծառայությունն այն է, որ նր-

*րանք մարդկությունը, նրա կուլտուրան և քաղաքակրթությունը փրկեցին ֆաշիստական բարբարոսությունից: Դրա համար էլ միլիոնավոր մարդիկ հանձին Սովետական Բանակի տեսնում են իրենց ազատարարին, ամբողջ աշխարհում խաղաղության ամենահուսալի հենարանին:*

*Մեր հաղթանակի շնորհիվ Կենտրոնական և Հարավ-Արևելյան Եվրոպայի երկրների ժողովուրդները հնարավորություն ստացան տապալելու կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունը: Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Ռումինիայի, Բուլղարիայի և Ալբանիայի ժողովուրդներն իրենց երկրներում հաստատեցին ժողովրդա-դեմոկրատական կարգեր: Այդ երկրների ժողովուրդները իրենց կոմունիստական և բանվորական պարտիաների ղեկավարությամբ հաջողությամբ ընթանում են սոցիալիզմի ուղիով:*

*Մեր Զինված Ուժերի հաղթանակի շնորհիվ, աշխարհի մարդկության մեկ երրորդն ընդմիշտ ազատված է իմպերիալիզմի լծից: Այժմ կոմունիստական պարտիաների համար ավելի հեշտ է ժողովուրդներին փրկել իմպերիալիստների ստրկությունից: Ինչպես ընկեր Ստալինն ասաց պարտիայի 19-րդ համագու-*



*մարում իր արտասանած պատմական ճառում՝* «Այժմ, երբ Չինաստանից ու Կորեայից մինչև Չեխոսլովակիա ու Հունգարիա երևան են եկել նոր «հարվածային բրիգադաներ» ի դեմս ժողովրդա-դեմոկրատական երկրների, այժմ մեր պարտիայի համար ավելի է հեշտացել պայքարելը, և գործն էլ ավելի լավ է գնում»:

***

*Սովետական Բանակի և ռազմա-ծովային նավատորմի 35-րդ տարեդարձը սովետական ժողովուրդը դիմավորում է սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման բուռն վերելքի պայմաններում, որն ընթանում է մեր սոցիալիստական հասարակության հիմնական տնտեսական օրենքի հիման վրա:*

*Ընկեր Ստալինն իր «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» նոր աշխատության մեջ առաջին անգամ հայտնագործեց սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքը, որի էական գծերն ու պահանջներն են «ամբողջ հասարակության նյութական և կուլտուրական հարաճուն պահանջմունքների առավելագույն բավարարման ապահովում՝ բարձրագույն տեխնիկայի բազայի վրա սոցիալիստական արտադրության անընդհատ աճման ու կատարելագործման միջոցով»:*

Կոմունիստական պարտիան և Սովետական պետությունը ճանաչելով սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքը և հենվելով դրա վրա, իրենց քաղաքականությամբ այն օգտագործում են հօգուտ մեր սոցիալիստական հասարակության, որի վառ ապացույցն է նոր հնգամյակի երկրորդ տարվա նվաճումները ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտ-
րոնական Վիճակագրական Վարչության հա-
ղորդագրության համաձայն ՍՍՌՄ ամբողջ
արդյունաբերության համախառն արտա-
արդյունաբերության 1952 թվականի
դրանքի արտադրության 1952 թվականի
տարեկան պլանը կատարվել է 101 տոկո-
սով։ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության
համախառն արտադրանքը 1952 թվականին,
1951 թվականի համեմատությամբ, աճել է
11 տոկոսով, իսկ 1940 թվականի համեմա-
տությամբ՝ 2,3 անգամ։ Աշխատանքի ար-
տադրողականությունը արդյունաբերության
մեջ բարձրացել է 7 տոկոսով, արտադրանքի
ինքնարժեքը իջել է 7 տոկոսով։ Հայրենական
մեքենաշինությունը 1952 թվականին ստեղ-
ծել է նոր տիպի ու մարկայի մոտ 600 կարե-
վորագույն մեքենաներ ու մեխանիզմներ, ո-
րոնք ապահովում են ժողովրդական տնտե-



սության տեխնիկական հետագա պրոգրեսը։ 1952 թվականին մեր երկրում մեքենաներ և սարքավորում արտադրվել է երեք անգամ ավելի, քան նախապատերազմյան 1940 թվականին և ավելի, քան արտադրված է եղել առաջին և երկրորդ հնգամյակներում միասին վերցրած։

1952 թվականին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում աճել է աշխատավորների մտցրած գյուտերի ու ռացիոնալիզատորական առաջարկների թիվը։ Արդյունաբերության, շինարարության մեջ և տրանսպորտում արմատավորված գյուտերի, տեխնիկական կատարելագործումների և ռացիոնալիզատորական առաջարկների քանակը կազմել է մոտ 800 հազար։

Արտադրության միջոցների արտադրության աճը հուսալի բազա է ստեղծել սպառման առարկաներ արտադրող արդյունաբերության զարգացման համար։ Այդ արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալը 1952 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացավ մոտավորապես 60 տոկոսով։

Աննախընթաց թափով առաջ է ընթանում կոմունիզմի մեծ կառուցումների շինարարությունը։ 1952 թվականին շահագործման

հանձնվեց Վ. Ի. Լենինի անվան Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքը՝ կոմունիզմի մեծ կառուցումների առաջնեկը։

Սովետական Զինված Ուժերի 35-րդ տարեդարձը խոշոր հաջողություններով է դիմավորում մեր հզոր երկրի սոցիալիստական գյուղատնտեսությունը, որը ամենախոշորն է ու ամենաառաջավորն աշխարհում։ ՍՍՌՄ-ում ցանքատարածությունը 1952 թվականին, 1951 թվականի համեմատությամբ, ավելացել են 2 միլիոն 765 հազար հեկտարով։ Հատկապես ավելացել են ցորենի և տեխնիկական կուլտուրաների ցանքատարածությունները։ 1952 թվականին ստացվել է հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների լավ բերք։ Հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը 1952 թվականին հասավ 8 միլիարդ փթի,որով մեր երկրում հացահատիկային պրոբլեմը լուծված է հաջողությամբ և անվերադարձ կերպով։ Զգալիորեն աճել է հանրային անասունների գլխաքանակը և բարձրացել նրանց մթերատվությունը։

1952 թվականին շարունակվել է գյուղատնտեսության նյութական-տեխնիկական բազայի հետագա աճը և ամրապնդումը։ Մեքենա-տրակտորային, անտառապաշտպան,



մարգագետնա-մելիորատիվ և մեքենա-անասնաբուծական կայանների ընդհանուր թիվը ներկայումս կազմում է 8.939 միավոր։ Գյուղատնտեսությունը 1952 թվականին մեր արդյունաբերությունից ստացավ 131 հազար տրակտոր՝ փոխադրած 15 ուժանոց տրակտորների, 41 հազար հացահատիկային կոմբայն, 57 հազար բեռնատար ավտոմեքենա և 2 միլիոնից ավելի գյուղատնտեսական այլ մեքենաներ ու գործիքներ։

Մեր սոցիալիստական գյուղատնտեսությունր անընդհատ աճում ու զարգանում է, — «Մեզ բոլորիս ուրախացնում է մեր սոցիալիստական գյուղատնտեսության վիթխարի աճը,— ասում է ընկ. Մալենկովը պարտիայի 19-րդ համագումարում իր տված զեկուցման մեջ,—... Տարակույս լինել չի կարող, որ առաջիկա տարիներին բազմահարուստ տեխնիկայով հագեցված մեր կոլտնտեսությունները, մեքենա-տրակտորային կայանները, սովխոզները է՛լ ավելի նշանակալից հաջողությունների կհասնեն գյուղատնտեսության զարգացման գործում, և մենք երկրում կունենանք պարենի առատություն ժողովրդի համար ու լիուլի հումք՝ արագորեն աճող թեթև արդյունաբերության համար»։

Հսկայական հաջողություններ են ձեռք բերվել կուլտուրական շինարարության և առողջապահության բնագավառում։ Հաշվի առնելով հասարակության կյանքում գիտության և կուլտուրայի հարաճուն նշանակությունը, մեր պարտիան ամենօրյա հոգատարություն է ցուցաբերում նրանց զարգացման նկատմամբ։ Մեր երկիրը պատված է գիտահետազոտական ինստիտուտների, լաբորատորիաների և կուլտուր-լուսավորական հիմնարկների լայն ցանցով։ 1952 թվականին բոլոր տեսակի գիտական հիմնարկների թիվը հասնում է 2900-ի։ Գրադարանների թիվը՝ 368 հազարի, որոնք ունեն ավելի քան 830 միլիոն օրինակ գիրք։

1952 թվականին գիտության, գյուտարարության, գրականության և արվեստի ասպարեզում կատարած աչքի ընկնող աշխատանքների համար Ստալինյան մրցանակի լաուրեատի կոչման են արժանացել 1.776 հոգի։

Այս բոլորի շնորհիվ է՛լ ավելի է բարձրացել սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական կյանքի մակարդակը։

ՍՍՌՄ ազգային եկամուտը 1952 թվականին, 1951 թվականի համեմատությամբ, ա-



ճեց 11 տոկոսով։ ՍՍՌՄ աշխատավորները իրենց անձնական նյութական և կուլտուրական պահանջները բավարարելու համար ստացան ազգային եկամտի երեք քառորդը։

Սոցիալիստական արտադրությունը, որի զարգացման հիմքում ընկած է սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքը, անընդհատ զարգանում ու կատարելագործվում է։ Պարտիայի 19-րդ համագումարի կողմից ընդունված նոր հնգամյակի դիրեկտիվները, որը հաջողությամբ իրագործվում է, նախատեսնում են արդյունաբերական արտադրանքի ծավալը 1940 թվականի համեմատությամբ, 1955 թվականին ավելացնել 3 անգամ, իսկ 1950 թվականի համեմատությամբ՝ 70 տոկոսով, ազգային եկամտի աճ՝ առնվազն 60 տոկոսով, բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձի բարձրացում՝ առնվազն 35 տոկոսով, կոլտնտեսականների եկամուտների բարձրացում՝ առնվազն 40 տոկոսով։ Նոր հնգամյակում գյուղատնտեսական արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրության ավելացումը նախատեսվում է 40-ից մինչև 70 տոկոսի սահմաններում, մեծ չափով աճելու է անասնաբուծության արտադրանքը։

Սովետական Միության համերաշխ բնա-

նիքում վերելք են ապրում նաև Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսությունը և կուլտուրան: Հայկական ՍՍՌ տերիտորիայում գտնվող արդյունաբերության համախառն արտադրանքի 1952 թվականի պլանը կատարվել է 100 տոկոսով: Ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1952 թվականին, 1951 թվականի համեմատությամբ, աճել է 10 տոկոսով:

1952 թվականին նոր հաջողություններ է ձեռք բերել ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը: Աճել են ցանքատարածությունները, հատկապես ցորենի ցանքատարածությունը, որը 1951 թվականի համեմատությամբ աճել է 16 տոկոսով, ընդարձակվել է մեքենա-տրակտորային կայանների ցանցը և մեծացել տրակտորային պարկի հզորությունը: Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների երեք քառորդից ավելին էլեկտրիֆիկացվել են:

Հայկական ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության և կուլտուրայի զարգացման համար մեծ հեռանկարներ է բացված նոր հնգամյա պլանով, որը հաջողությամբ իրագործվում է:

***

Իրենց ազատարար Սովետական Բանակի 35-րդ տարեդարձը սոցիալիստական շինա-



րարության նորանոր հաջողություններով են դիմավորում Կենտրոնական և Հարավ-Արևելյան Եվրոպայի ժողովրդա-դեմոկրատական երկրները, որոնք ոգեշնչված են Սովետական Միության վիթխարի հաջողություններով ու նրա անշահախնդիր օգնությամբ: Վիթխարի հաջողությունների է հասել Գերմանական դեմոկրատական ռեսպուբլիկան, որն արդեն ձեռնամուխ է եղել սոցիալիզմի էկոնոմիկայի հիմքերի կառուցմանը:

Չին մեծ ժողովուրդը թոթափելով գոմինդանական բանդայի և օտարերկրյա իմպերիալիզմի անտանելի լուծը, համաշխարհային պատմական նշանակություն ունեցող հաղթանակի հասավ: Չինական ժողովրդական ռեսպուբլիկան Չինական կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ազգայնացրեց արդյունաբերությունը և անցկացրեց հողային ռեֆորմ: 1953 թվականից չին մեծ ժողովուրդը ձեռնամուխ է եղել առաջին հնգամյա պլանի կենսագործմանը:

Տարեց-տարի աճում և ամրապնդվում է Մոնղոլական ժողովրդական ռեսպուբլիկայի էկոնոմիկան, բարելավվում է մոնղոլ ժողովրդի նյութական բարեկեցությունը, բարձրանում նրա կուլտուրան:

⁂

Այն ժամանակ, երբ Սովետական Միությունը և սոցիալիզմի ու դեմոկրատիայի ամբողջ լագերի ուժերը ծաղկում ու ամրապնդվում են, ընթանալով ստեղծագործական աշխատանքի ուղիով և հետևողականորեն վարելով խաղաղության քաղաքականություն, միջազգային իմպերիալիզմի լագերի ուժերը անընդհատ թուլանում են, խրվելով համաշխարհային կապիտալիստական սիստեմի ընդհանուր ճգնաժամի մեջ։ Իմպերիալիզմի լագերը ԱՄՆ-ի՝ միջազգային ռեակցիայի այդ օջախի գլխավորությամբ ձգտում է ագրեսիվ պատերազմների և էկոնոմիկայի միլիտարիզացման միջոցով դուրս գալ անելանելի դրությունից։

ԱՄՆ-ը իր վարած քաղաքականությամբ ձգտում է տիրապետություն հաստատել ամբողջ աշխարհում, և այդ քաղաքականությունը ճգնում է քողարկել «ոչ կոմունիստական աշխարհի երկրների միջև համագործակցության և համաձայնեցված գործողությունների մասին» փքուն ֆրազներով։ ԱՄՆ-ի մոնոպոլիստների պլանները և դիտավորությունները ոչնչով չեն տարբերվում ֆաշիստական Գերմանիայի պարագլուխների պլաններից,



որոնց ետևից ընկնելով ֆաշիստական պարագլուխները կործանեցին իրենց, և կկործանվեն համաշխարհային տիրապետության նոր հավակնորդները՝ ամերիկյան իմպերիալիստները։

Արդի իմպերիալիզմը ամենուրեք ձգտում է առավելագույն շահույթի ապահովման՝ իր երկրի բնակչության մեծամասնության շահագործման, քայքայման ու աղքատացման միջոցով, ուրիշ երկրների ժողովուրդների ստրկացման ու կողոպտման միջոցով, պատերազմների և ժողովրդական տնտեսության ռազմականացման միջոցով։

Կապիտալիստական լագերը գլխավորող ամերիկյան իմպերիալիզմը հանդիսանում է ամենառեակցիոն և սև ուժը, ժողովուրդների ազատության ժանդարմը և խեղդողը։

Ամերիկյան իմպերիալիզմը լկտիաբար և անամոթ կերպով է իրեն պահում կապիտալիստական երկրներում, քայքայում է նրանց էկոնոմիկան, կողոպտում է աշխատավորներին, ագրեսիվ պատերազմ մղում Կորեայում, սպանելով անպաշտպան կանանց ու երեխաների, ավերելով խաղաղ քաղաքներն ու գյուղերը, գործադրելով բակտերիոլոգիական զենք։ ԱՄՆ-ի ագրեսիվ քաղաքականությունը խիստ կերպով սրում է կապիտալիս-

*տական երկրների միջև գոյություն ունեցող հակասությունները, ուժեղացնում է ամերիկյան իմպերիալիստական գիշատիչների ճանկն ընկած ժողովուրդների պայքարը իրենց ազատության և անկախության համար։*

*Բոլոր երկրներում ծավալվել է խաղաղության համար մղվող պայքարի կազմակերպված հզոր շարժում։ Խաղաղության պաշտպանության Վիեննայի կոնգրեսը նորից վառ կերպով ցույց տվեց, որ այդ դեմոկրատական, համաժողովրդական շարժումը, որին մասնակցում են հարյուր միլիոնավոր մարդիկ, մի այնպիսի ուժ է, որն ընդունակ է վիժեցնելու նոր պատերազմի հրձիգների արյունալի պլանները։*

*Խաղաղության և դեմոկրատիայի լագերը, որը տարածվում է Էլբայից մինչև Խաղաղ օվկիանոս, համակված է խաղաղ շինարարության պաթոսով և խաղաղությունը երկար տարիներ պահպանելու ձգտումով, անհրաժեշտության դեպքում նա ունի նաև բավականաչափ հզոր զինված ուժեր։ Եվ թող իմպերիալիստներն իմանան ու հիշեն, որ համաշխարհային նոր պատերազմը ավելի վտանգավոր կլինի կապիտալիզմի համար, քան դեմոկրատիայի լագերի համար, իսկ եթե այնուհանդերձ ԱՄՆ-ի իմպերիալիզմը և*



*նրանց համախոհները սանձազերծեն նոր համաշխարհային երրորդ պատերազմը, ապա դա առաջ կբերի խաղաղասեր բոլոր ժողովուրդների զինված հուժկու հակահարված, որոնք չեն խնայի իրենց ուժերը, որպեսզի ընդմիշտ վերջ տան կապիտալիզմին։*

***

*Կոմունիստական պարտիան և Սովետական պետությունը հաստատ ու հետևողականորեն վարում են խաղաղության քաղաքականություն։* «... Մեր պարտիայի շահերը,— *ասում է ընկեր Ստալինը,*— ոչ միայն չեն հակասում, այլ, ընդհակառակը, միաձուլվում են խաղաղասեր ժողովուրդների շահերին։ Իսկ ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նրա շահերը առհասարակ անբաժանելի են ամբողջ աշխարհի խաղաղության գործից»։

*Հաստատ ու հետևողականորեն վարելով խաղաղության քաղաքականություն, Սովետական պետությունը աշալուրջ կերպով հետևում ու մերկացնում է պատերազմի հըր-*

ճիգների մեքենայությունները: Պատմության փորձը սովորեցնում է, որ որքան ավելի են թուլանում իմպերիալիզմի դիրքերը, այնքան ավելի է աճում նրա կողմից ռազմական ավանտյուրաների վտանգը: Ելնելով դրանից, պարտիան և սովետական կառավարությունը ղեկավարվում են Լենինի և Ստալինի այն ցուցումներով, որ հարկավոր է մշտապես հոգ տանել սոցիալիստական պետությունն ամրապնդելու, նրա ուժերն ու հզորությունը բազմապատկելու մասին, մշտապես բարձրացնել ռևոլյուցիոն զգոնությունը, վերջ տալ բարեհոգության ու բերանբացության մեր շարքերում: Մեր պարտիան և Սովետական կառավարությունը սիստեմատիկ կերպով ամրապնդում են մեր Սովետական Բանակը, ավիացիան, Ռազմա-Ծովային Նավատորմը և դրանք մշտական մարտական պատրաստականության մեջ են պահում՝ հարկ եղած դեպքում ագրեսորին հակահարված տալու սովետական ռազմական արվեստի բոլոր կանոններով:

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԾԱՎԱԼԵԼ ԱԳԻՏԱՑԻԱՆ ԴԵՊՈՒՏԱՏՈՒԹՅԱՆ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐԻ ՕԳՏԻՆ

Մոտենում է 1953 թվականի մարտի 1-ը, աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների օրը: Ընտրություններն անց են կացվելու սովետական մարդկանց քաղաքական և աշխատանքային այն մեծ ակտիվության պայմաններում, որ առաջ են բերել Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարը և ընկեր Ստալինի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» կլասիկ աշխատությունը:

Սովետական մարդիկ իրենց բազմամարդ նախընտրական ժողովներում միահամուռ կերպով դեպուտատության համաժողովրդական առաջին թեկնածու են առաջադրել ընկեր Ստալինին:

Դեպուտատության թեկնածուներ են առաջադրվել ընկեր Ստալինի զինակիցները, մեր պետության և պարտիայի ականավոր ղեկավարները:

Առաջադրված թեկնածուների թվում են

նաև մեր երկրի բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչները, մեր ժողովրդի անձնվեր զավակները, որոնք իրենց համաձայնությունն են տվել և օկրուգային ընտրական հանձնաժողովների կողմից գրանցվել են որպես դեպուտատության թեկնածուներ։

Այժմ աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների նախապատրաստական աշխատանքները թևակոխել են ամենակարևոր շրջանը՝ կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին ագիտացիա ծավալելու շրջանը։ Այդ ամենապատասխանատու աշխատանքը պատվով կատարելու համար ամենօրյա ագիտացիոն աշխատանք են կատարում Կիրովականի շրջանի 32 ագիտկոլեկտիվները՝ իրենց 500 ագիտատորներով։

Ուսումնասիրելով և արմատավորելով ագիտացիոն աշխատանքի լավագույն փորձը, որ ձեռք են բերել տեղական Սովետների անցյալ ընտրությունների ընթացքում, ագիտատորները ծավալել են իրենց ագիտացիոն աշխատանքը՝ ընտրողների շրջանում։

Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների դեպուտատության թեկնածուների օգտին կատարվող ագիտացիոն աշ-



խատանքի լավագույն օրինակ են ցույց տալիս Կիրովականի շրջանի Ֆիոլետովոյի, Խնձորուտի, Ժդանովի, Համզաչիմանի, Մակարաշենի ընտրական տեղամասերին կից ագիտպունկտերը, որտեղ ամենօրյա աշխատանք է տարվում ընտրողների հետ։

Ագիտատոր Դալլաքյանը իր դասախոսություններով և զրույցներով հայտնի է ոչ միայն Խնձորուտ գյուղի, այլև շրջանի մյուս գյուղերի աշխատավորությանը։ Նա այժմ ագիտացիոն աշխատանք է կատարում Խնձորուտի իրեն ամրացված թաղամասում։ Նա իր զրույցներն անց է կացնում հետաքրքիր, հասկանալի լեզվով։ Դեպուտատության թեկնածուների առաջադրումից հետո ագիտատոր Դալլաքյանը պլանով նախատեսված ագիտացիոն աշխատանքի թեմատիկան խելացիորեն զուգակցում է օկրուգային, շրջանային և գյուղական Սովետների դեպուտատության թեկնածուների օգտին ագիտացիա մղելու կոնկրետ խնդիրների հետ։ Ընտրողներին մանրամասնորեն ծանոթացնելով դեպուտատության թեկնածուների կենսագրությանը և արժանիքներին, ագիտատորը նրանց կոչ է անում միահամուռ կերպով ձայն տալու դեպուտատության թեկնածուների օգտին։

Ագիտացիոն աշխատանքի լավագույն օրինակ է ցույց տալիս Մակարաշենի ագիտկոլեկտիվը. այստեղի ագիտատորներից Աբգարյանը 5-րդ տարին է, որ ագիտացիոն աշխատանք է կատարում կոլտնտեսականների մեջ, այժմ նա նախընտրական ագիտացիա է տանում № 6 թաղամասում, որտեղ ընդգրկված են 23 ընտրողներ։ Բազմազան և հետաքրքիր զրույց-դեկուցումների հետ միասին, ընկ. Աբգարյանը ընտրողներին ծանոթացրել է այդ օկրուգում քվեարկվող Կիրովականի օկրուգային Սովետի դեպուտատության թեկնածու ընկ. Երվանդ Աբազյանի և շրջսովետի դեպուտատության թեկնածու ճակնդեղագործ օղակավարուհի Աշխեն Աստուրի Պեպանյանի կյանքին ու գործունեությանը։ Ընկ. Պեպանյանը 3 անգամ ընտրվել է Մակարաշենի գյուղսովետի դեպուտատ, այժմ, լավագույն աշխատանքի համար, կոլտնտեսականները մեծ խանդավառությամբ նրան առաջադրել են շրջանային Սովետի դեպուտատության թեկնածու։ Այստեղ ագիտացիոն աշխատանքի լավ օրինակ են ցույց տալիս նաև ընկ. ընկ. Հ. Թադևոսյանը, Վ. Մովսիսյանը, Ա. Հակոբյանը, Մ. Աբգարյանը և ուրիշներ, որոնք ընտրողների շրջանում



լայն ագիտացիա են տանում առաջադրված դեպուտատության թեկնածուների օգտին։ Ուսանելի է Ժդանով գյուղի ագիտկոլեկտիվի աշխատանքը, որտեղ 40 ագիտատորներ սիստեմատիկ կերպով զրույց-զեկուցումներ և ընթերցանություններ են կազմակերպում ընտրողների շրջանում։ Ագիտատորներ Սահակյանը, Ղարաբեկյանը, Գասպարյանը, Համբարյանը և ուրիշներ, ինչպես թաղային խմբակներում, այնպես և ակումբում, ագիտպունկտում և ընթերցարանում, հաճախակի հանդիպում են ընտրողների հետ, նրանց բացատրում են ընտրությունների, մեր երկրի սոցիալիստական շինարարության, հինգերորդ հնգամյա պլանի կատարման և միջազգային դրության վերաբերյալ զանազան հարցերը։

Տեղական Սովետների ընտրությունների հետ կապված քաղաքական ագիտացիայի բնորոշ կողմը միաժամանակ այն է, որ ամենօրյա ագիտացիան, որ տարվում է դեպուտատության թեկնածուների օգտին, սերտ կերպով կապվում է շրջանի կոլտնտեսությունների և արտադրական ձեռնարկությունների առջև կանգնած պետական-տնտեսական կոնկրետ խնդիրների կենսագործման

հետ՝ հատկապես դարնան գյուղատնտեսական աշխատանքներին կազմ ու պատրաստ դիմավորելու, սոցիալիստական գործարար մրցություն կազմակերպելու, աշխատավորության մեջ դեպի աշխատանքը գիտակցական վերաբերմունք դաստիարակելու հրատապ խնդիրների հետ։ Ագիտացիոն աշխատանքների կազմակերպմանը անմիջական մասնակցություն են ունենում և աշխատավորության առջև սիստեմատիկաբար դասախոսություններով և քաղաքական զեկուցումներով հանդես են գալիս շրջանի ղեկավար աշխատողները՝ շրջկոմի բյուրոյի և դասախոսական խմբակի անդամները։ Առանձնապես քաղաքական բարձր հագեցվածությամբ են անցնում շրջանային կոմիտեի անդամներ ընկ. ընկ. Բաղրամյանի, Սաֆարյանի, Օղաբաշյանի, Զուլհակյանի, Խամոևի և ուրիշների դասախոսություններն ու քաղաքական զեկուցումները, որոնք սերտորեն կապվում են տեղական Սովետների ընտրությունները կազմակերպված անցկացնելու կոնկրետ խնդիրների հետ։

Դեպուտատության թեկնածուների օգտին տարվող ագիտացիոն աշխատանքների կազմակերպման գործում լուրջ անելիքներ ունեն նաև ընտրված վստահելի անձերը։ Այդ



ուղղությամբ նշանակալից աշխատանք են կատարել վստահելի անձեր ընկ. ընկ. Խաչատրյանը, Ավագյանը, Գրիգորյանը, Գեվորգյանը, Աշրաֆյանը և ուրիշները։

Ներկայումս աշխատավորների նախընտրական ժողովներում ընտրողները հանդիպում են ունենում իրենց դեպուտատության թեկնածուների հետ։ Այդ ժողովները պետք է կազմակերպել և անցկացնել ընտրողների բարձր քաղաքական ակտիվության պայմաններում։ Այս գործում նույնպես մեծ անելիքներ ունեն ագիտատորները և վստահելի անձերը։

Սակայն պետք է նշել, որ Գյոզալդարայի, Լերմոնտովոյի, Քարաբերդի ագիտկոլեկտիվները դեռևս անբավարար կերպով են զբաղվում ագիտացիոն-մասսայական աշխատանքներով, շատ ագիտատորների կողմից դեպքից-դեպք է կատարվում ագիտացիոն աշխատանքը, անհրաժեշտ չափով կահավորված չեն ագիտպունկտերը, անբավարար է ցուցադրական ագիտացիան։ Նշված ագիտկոլեկտիվները և նրանց ղեկավարներ ընկ. ընկ. Սադիկովը, Մակշանովը, Մացակյանը պետք է անհրաժեշտ եզրակացություն հանեն և վճռականապես բարելա-

վեն նախընտրական ագիտացիոն աշխատանքները։ Ագիտատորներին անհրաժեշտ օգնություն պետք է ցույց տան Կիրովականի շրջկոմի ագիտացիայի և պրոպագանդայի բաժինը ու շրջսովետի Կուլտ-լուս բաժինը։

Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ագիտատորները պետք է ավելի ուժեղ թափ հաղորդեն ընտրողների հետ տարվող ագիտացիոն մասսայական աշխատանքներին, ուժեղացնեն դեպուտատության թեկնածուների օգտին տարվող քաղաքական ագիտացիան և հասնեն այն բանին, որպեսզի մեր բոլոր աշխատավորները, մասնակցեն ընտրություններին և մեկ մարդու նման, իրենց ձայնը տան սովետական ժողովրդի արժանավոր զավակների՝ կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին։

Գ. ՍՏԵՓԱՆՅԱՆ
ՀԿՊ Կիրովականի շրջկոմի
քարտուղար

---

# ԹԱՂԱՅԻՆ ԱԳԻՏԱՏՈՐԸ

Ստեփանավանի շրջանի Ուռուտ գյուղի Ս. Սպանդարյանի անվան կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպությունը զոոտեխնիկ Կոլյա Շարբաթյանին առաջադրել է որպես թաղային ագիտատոր, և նա ջանք չի խնայում կատարելու պարտիական այդ պատվավոր հանձնարարությունը։

Ագիտատոր Շարբաթյանը երկար տարիների ագիտացիոն աշխատանքի փորձ ունի և իր ձեռք բերած փորձը վարպետությամբ է օգտագործում։ Նրա անցկացրած ագիտացիոն պարապմունքներն անցնում են գաղափարական բարձր մակարդակով, աշխույժ և հետաքրքիր, որի հիմնական պատճառը ագիտատորի կողմից պարապմունքներին բազմակողմանիորեն նախապատրաստվելն է։ Ագիտացիոն զրույցի պատրաստվելիս, ագիտատոր Շարբաթյանը խնամքով ընտրում է զրույցի թեման, բազմակողմանիորեն ուսումնասիրում է այն, պատրաստում է ան-

հրաժեշտ դիտակտիկ ու ցուցադրական նյութերը և ապա ներկայանում զրույցի։

Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների նախապատրաստության առաջին իսկ օրից ագիտատոր Շարբաթյանը սիստեմատիկաբար ագիտացիոն պարապմունքներ է անցկացնում իրեն ամրացված թաղամասի բնակչության մեջ, մասսայականացնելով ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիաները, ընտրությունների կանոնադրությունը, պարտիայի 19-րդ համագումարի նյութերը և ընկեր Ստալինի արտասանած ճառը 19-րդ համագումարի եզրափակիչ նիստում։ Ագիտատոր Շարբաթյանը ագիտացիոն զրույցի նյութը կապում է իրենց գյուղի, շրջանի առջև դրված ներկա ու հեռանկարային խնդիրների հետ և աշխատավորների ուշադրությունը բևեռում այդ խնդիրների կենսագործման վրա։

Իր զրույցներից մեկը ագիտատոր Շարբաթյանը նվիրեց անասնաբուծության զարգացման հարցին՝ կապված պարտիայի 19-րդ համագումարի կողմից ընդունված նոր հնգամյա պլանի դիրեկտիվների հետ։

Այդ զրույցին նա նախապատրաստվեց խնամքով ու բազմակողմանիորեն։ Ուսում-



նասիրեց հինգերորդ հնգամյա պլանի դիրեկտիվների՝ գյուղատնտեսական բաժինը, պարտիայի 19-րդ համագումարում ընկ. Մալենկովի տված զեկուցումը։ Նորից ծանոթացավ իրենց շրջանի կոլտնտեսությունների առաջավոր անասնապահների աշխատանքին, ետ մնացող, բարձր ցուցանիշների չհասած անասնապահների աշխատանքի թերի կողմերին, կազմեց իր զրույցի կոնսպեկտը և ապա նոր ներկայացավ իր ունկնդիրներին։ Զրույցի հիմնական մասը նվիրեց անասնաբուծության բնագավառում ձեռք բերված նվաճումներին, նշելով, որ 1945 թվականի հուլիսից մինչև 1952 թվականի հուլիսն ընկած ժամանակամիջոցում ՍՍՌՄ-ում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը աճել է 13 միլիոն 400 հազար գլխով։ Ամբողջ ՍՍՌՄ-ում մսի, կաթի, յուղի, ձվի, բրդի և կաշվի համախառն ու ապրանքային արտադրանքը գերազանցել է նախապատերազմյան մակարդակը։

Այնուհետև ագիտատորը մանրամասն պատմեց, թե ինչ է նախատեսվում 1951—1955 թ. թ. հնգամյա պլանում՝ հանրային անասունների գլխաքանակի ավելացման և նրանց մթերատվության բարձրացման համար։ Պարապմունքի վերջին մասը ագիտա-

տոր Շաբբաթյանը նվիրեց իրենց առջև դըրված խնդիրներին, ունկնդիրներին մանրամասն բացատրեց, որ սովետական յուրաքանչյուր անասնապահի, անասնապահական բրիգադայի և կաթնա-ապրանքային ֆերմայի աշխատանքի լավ կազմակերպումից, անասունների նկատմամբ հոգատար խնամք տանելուց է կախված հանրային անասնաբուծության հետագա զարգացման, նոր հընգամյա պլանով նախատեսված հանրային անասունների գլխաքանակի ավելացման և նրանց մթերատվության բարձրացման ապահովումը։ Բազմաթիվ ու հետաքրքրական օրինակներով նա ցույց տվեց, թե ինչպես առաջավոր անասնապահի, բրիգադայի փորձի փոխանակումով, սոցմրցման ծավալմամբ երկրի հազարավոր կոլտնտեսականներ փայլուն հաջողությունների են հասնում։

Նա օրինակներ է բերում նաև իրենց կոլտնտեսության անասնապահական ֆերմայից, ասելով, որ մեր կոլտնտեսության կաթնա-ապրանքային ֆերման վատ չի աշխատում, մենք տարեկան պլանները թե խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի և թե մթերատվության բնագավառում կատարել ենք։ Սակայն մենք ավելի բարձր ցուցանիշներ կունենայինք, եթե բոլորն էլ



աշխատեին այնպես, ինչպես աշխատում է, ասենք, երկրորդ բրիգադան, կամ կթվորուհիներ՝ Արփենիկ Դավթյանը, Մանյա Ղազարյանը, Մանյա Կարապետյանը և ուրիշներ։

Նա քննադատում է կթվորուհիներ Սիրուշ Այվազյանին, Լուսիկ Պետրոսյանին, որոնք ավելի քիչ կաթ են ստանում, քան, օրինակ, կթվորուհի Արփենիկ Դավթյանը, որը 1952 թվականին կաթի բարձր արտադրանք ստանալու համար, որպես լրացուցիչ վարձատրություն, ստացել է մեկ տոննա կաթ և մեկ գառ։ Ագիտատորը ո՛չ միայն ինքն է խոսում, այլև ունկնդիրներին է խոսեցնում, և նա այս անգամ ունկնդիրների առջև հանդես բերեց կթվորուհի Արփենիկ Դավթյանին։

Արփենիկին ունկնդիրները մեծ ուշադրությամբ լսեցին։ Հարուստ փորձ ունեցող կըթվորուհին պատմեց այն մասին, որ իրեն ամրացված յուրաքանչյուր կովից անցյալ տարի ստացավ 2 հազար 500 լիտր կաթ, իր խնամած հորթերը օրական 600—700 գրամ

մեջին աճ են տալիս, իսկ կովերը գեր են և առույգ։

Նա այդ հաջողություններին հասել է այն բանի շնորհիվ, որ ճշտորեն է կիրառում զոոտեխնիկական միջոցառումները, խստիվ պահպանում է կերակրման կանոնները, յուրաքանչյուր կովին կեր տալիս է ըստ նրա կենդանի քաշի ու կաթնատվության։ Կովերը կթում է նույնպես ըստ ռեժիմի և այլն։

Ագիտատորն առաջարկում է ի պատիվ տեղական Սովետների ընտրությունների՝ սոցիալիստական նոր պարտավորություններ ստանձնել, օրինակելիորեն կազմակերպել կովերի ծինը, հորթերի ոչ մի կորուստ չտալ, առանձնահատուկ խնամք տանել մայր-կովերի նկատմամբ։ Նրա առաջարկն ընդունում են անասնապահները։

Ագիտատոր Շարբաթյանը զրույցի վերջում հաղորդեց, որ աշխատավորների դեպուտատների Կիրովականի օկրուգային Սովետի ընտրությունների Ուռուտի № 73 ընտրական օկրուգում դեպուտատության թեկնածու է



առաջադրված ընկ. Գրիշա Արամի Սարգըսյանը։

Մոտենում է տեղական Սովետների ընտրությունների օրը, մարտի մեկը։ Այժմ, ինչպես ռեսպուբլիկայի բոլոր ագիտատորները, այնպես էլ ագիտատոր Շարբաթյանը, ագիտացիա են կազմակերպում առաջադրված դեպուտատության թեկնածուների օգտին, ընտրողներին ծանոթացնում են նրանց կենսագրության, հասարակական ու աշխատանքային գործունեության հետ։

1953 թվականի մարտի մեկին, ռեսպուբլիկայի բոլոր աշխատավորների հետ մեկտեղ, Ուռուտի կոլտնտեսականները և կոլտնտեսուհիները մեկ մարդու պես իրենց ձայնը կտան տեղական Սովետներում առաջադրված պարտիականների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին, իրենց էլ ավելի բարեկեցիկ ու երջանիկ կյանքի օգտին։

Գ. ԲԱՂԴԱՍՅԱՆ

---

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

I

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ 35-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*1. Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը՝ Սովետական պետության քաջարի Զինված Ուժերի ստեղծողներ։*

*2. Սովետական Բանակը և Ռազմա-ծովային Նավատորմը սովետական մարդկանց խաղաղ ստեղծագործական աշխատանքի հավատարիմ պահապաններն են, ժողովուրդների անվտանգության և խաղաղության պաշտպանը։*

*3. Շարունակ բարձր զգոնություն ցուցաբերելը և պատերազմի հրձիգների մեքենայություններին հակահարված տալը, Սովետական Բանակը, Ռազմա-Ծովային Նավատորմը և հետախուզական օրգանները ամեն կերպ ամրապնդելը՝ սովետական մարդկանց հայրենասիրական պարտքն է։*

*4. ՍՍՌՄ զարգացման հինգերորդ հնգամյա պլանի հաջող կենսագործումը՝ Սովետական պետության տնտեսական և ռազմական հզորության հետագա ամրապնդման հիմքն է։*



### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. ՍՏԱԼԻՆ— Կարմիր Բանակի երեք առանձնահատկությունների մասին: *Հայպետհրատ, Երևան 1952 թիվ:*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ պարտիայի 19-րդ համագումարում: *Հայպետհրատ, 1952 թ.:*

Գ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *Հայպետհրատ, 1952 թ.:*

Ն. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Ճառ ՀամԿ(բ)Պ 19-րդ համագումարում, *Հայպետհրատ, 1952 թ.:*

II

## 1953 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՐՏԻ 1-ԻՆ ԲՈԼՈՐՍ ԴԵՊԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*1. Ընկեր Ստալինը աշխատավորների դեպուտատների Սովետների առաջին համաժողովրդական թեկնածուն է։*

*2. Տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում աշխատավորների աչքի ընկնող հաջողությունները անխզելիորեն կապված են տեղական Սովետների բեղմնավոր աշխատանքի հետ։*

*3. Պետական իշխանության օրգանների ընտրությունները մեր երկրում՝ հանդիսանում են համաժողովրդական տոն։*

4. 1953 թվականի մարտի մեկին մեկ մարդու պես քվեարկելով կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին՝ սովետական մարդիկ կցուցադրեն իրենց բարոյա-քաղաքական միասնությունը, իրենց անդուլ կամքը՝ պայքարելու կոմունիզմի հաղթանակի համար։

## III

## ԱՄԵՆ ԿԵՐՊ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԿԱՆՑ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԶԳՈՆՈՒԹՅՈՒՆԸ

1. Ընկեր Ստալինը սովետական մարդկանց սովորեցնում է, որ մենք կոմունիզմ ենք կառուցում թշնամական կապիտալիստական շրջապատման պայմաններում, որ իմպերիալիստները չեն հրաժարվել և չեն հրաժարվելու իրենց ինտերվենցիայով խանգարել և վնասել մեզ։

2. Սովետական մարդկանց զգոնությունը անհրաժեշտ է բոլոր տեղամասերում և ամեն մի իրադրության մեջ։

3. Մարդասպան բժիշկների բանդայի և նրանց տարբերկրյա տերերի մերկացումը՝ մեծ հարված է պատերազմի ամերիկա-անգլիական հրձիգներին։

4. Վերջ տալ բերանբացությանը մեր շարքերում, վերացնել բարեհոգությունը և ինքնահանգստացումը մեր մարդկանց մոտ՝ այս են պահանջում սովետական ժողովրդի շահերը։



## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. ՍՏԱԼԻՆ.— Պարտիական աշխատանքի թերությունների և տրոցկիստական ու այլ երկերեսանիներին լիկվիդացիայի ենթարկելու միջոցառումների մասին։ *Պետհրատ, 1939 թ.։*

Գ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին։ *Հայպետհրատ, 1952 թ.։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի կանոնադրությունը։ *Հայպետհրատ, 1952 թ.։*

Վերջ տալ բերանբացությանը մեր շարքերում։ «Պրավդա»-ի *հունվարի 18-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.» հունվարի 20-ի համարում։*

Խմբագրի տեղակալ՝ Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

Отдел Пропаганды и агитации ЦК КП
Армении

**БЛОКНОТ АГИТАТОРА**

**№ 3** **1953 г.**

ՎՖ 00715 Պատվեր № 154 Տիրաժ 9300

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան։